# ԲՐԻՏԱՆԱԿԱՆ ՏԱԳՆԱՊԸ

## ԱՇԽԱՏԱՒՈՐԱԿԱՆՆԵՐՈՒ ՀԱԿԱԾՐԱԳԻՐԸ

### ՄԱՔՏՈՆԸԼՏ ԿԸ ՎՏԱՐՈՒԻ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵՆԷՆ

*Հիմա որ քաղաքական կուսակցութիւնները ճշդած են իրենց դիրքը հանդէպ նոր կառավարութեան, ամբողջ հետաքրքրութիւնը կը կեդրոնանայ տնտեսական-ելմտական ծրագրին, ինչպէս նաեւ աշխատաւորականներու հակածրագրին շուրջ։*

*Կառավարութիւնն արդէն սկսաւ քննել իր պիւտճէն եւ ելմտական բարւոքման ծրագիրը, որուն մասին ստոյգ որեւէ տեղեկութիւն չկայ տակաւին։ Այլ միայն ենթադրութիւններ։ Ստոյգ է միայն թէ կառավարութիւնը վճռապէս որոշած է համեմատաբար նուազեցնել անգործութեան նպաստն ու թոշակները։ Իսկ տուրքերու եւ մաքսերու յաւելումը, առ այժմ տեղի կուտայ զանազան ենթադրութիւններու։*

*Միւս կողմէ, կառավարութեան ծրագիրը կուգայ սաստկացնելու աշխատաւոր զանգուածներու եւ կառավարական պաշտօնեաներու դժգոհութիւնը։ Ուսուցիչներու միութիւնը եւ Սկովտիոյ կրթական Հաստատութիւնը որոնք 165,000 ուսուցիչներ կը համրեն, հրապարակեցին յայտարարութիւն մը, որով կը յայտնեն թէ իրենց բոլոր միջոցներով պիտի ջանան արգիլել թոշակներու նուազումը։*

*Աշխատաւորական յանձնախումբ մը, ներկայիս պատրաստելու վրայ է ծրագիր մը, որ պիտի ներկայացուի ընդդէմ կառավարութեան ծրագրին։ Այս ծրագրին գլխաւոր կէտերը կը կազմեն, — երկիր վերադարձնել անգլիական դրամագլուխները, որոնք կը շահագործուին արտասահմանի մէջ, տուրք հաստատել այն հասոյթներուն վրայ, որոնք աշխատանքով չէ որ կը գոյանան, նուազեցնել պատերազմական պարտքերը եւայլն։*

*Աշխատաւորական կուսակցութեան մասնաճիւղը որուն կը պատկանի Մաքտոնըլտ, որոշեց զայն վտարել իր շարքերէն։ Այս որոշումը հաղորդուած է իրեն։ Մաքտոնըլտի անդրանիկ զաւակը, որ հրաւիրուեր էր բացատրութիւններ տալու իր պատկանած կոմիտէին, որոշեց դիրք բռնել իր հօրը կողքին։*

*Իսկ Մաքտոնըլտի ընտրական շրջանակը — ամբողջ հանքագործներ — որոշեց հրաւիրել զինքը որ հրաժարի երեսփոխանութենէ։*

# ՈՉ-ՅԱՐՁԱԿՄԱՆ ԴԱՇՆԱԳՐԵՐԸ

## ՌՈՒՍԻԱ ԿԸ ՃՇԴԷ ԻՐ ԴԻՐՔԸ

*Ռիկայէն տրուած լուրի մը համաձայն, Ռուսիոյ Գործավարներու Խորհուրդը մանրամասն նիստ մը գումարելով, քննած է Լեհաստանի հետ ոչ-յարձակման դաշնագրի մը կնքման հարցը։ Բրեսդինոքի որ կը փոխանորդէր Լիտվինովի, տուած է անհրաժեշտ տեղեկութիւններ, որմէ յետոյ, Գործավարներու Խորհուրդը տուած է հետեւեալ որոշումները.*

*1) Այս մասին Լեհաստանի հետ իր բանակցութեանց մէջ, խորհրդային կառավարութիւնը կը մերժէ միաժամանակ Ռումանիոյ եւ Պալթեան պետութեանց հետ բանակցելու կարելիութիւնը։ 2) Խորհրդային կառավարութիւնը չի փոխեր իր դիրքը պեսարապեան սահմանագլուխի հարցին հանդէպ։ 3) Խորհրդային կառավարութիւնը պայման կը դնէ որ Լեհաստան չէզոքութիւն պահէ այն պարագային որ Ռուսիա պատերազմի բռնուի ուրիշ պետութեան մը հետ։*

### Կանտիի մեկնումը դէպի Լոնտոն

*Կանտի Պոմպէյէն նաւ մտաւ Անգլիա երթալու համար։ Խուռն բազմութիւն հաւաքուած էր նաւահանգիստ զինքը ողջունելու։*

*Կանտի մեծ յոյս չունի իր յաջողութեան վրայ։ Լրագրողի մը յայտնեց թէ հակառակ խառնուածքով լաւատես ըլլալուն, հորիզոնին վրայ ոչինչ կը տեսնէ որ արդարացնէ յոյսը։*

### Ազգերու Դաշնակցութեան ժողովը

*Ազգերու Դաշնակցութեան ժողովը բացուեցաւ երէկ Ժընեւի մէջ։ Լիազօր պատուիրակներու եւ փոխ-անդամներու ընդհանուր թիւը կը հասնի 300ի։*

*Առաջին անգամ աշխատանքի լծուեցաւ Համեւրոպայի կազմութեան յանձնախումբը որ բազմաթիւ տեղեկագրեր ունի իր սեղանին վրայ զանազան հարցերու վերաբերեալ,— արեւելեան Եւրոպայի մէջ երկրագործական արտադրութեանց սպառումը, վարկի միջազգային կազմակերպումն ու տնտեսական գործակցութիւնը։ Այս հարցերէն վերջ, յանձնախումբը պիտի զբաղի Լիտվինովի տեղեկագրովը, ոչ-յարձակման տնտեսական դաշնագրի մը կնքման համար։*

### Լունաչարսկի ախոռական Պոլսոյ մէջ

*Աթէնքէն կը հեռագրեն թէ Պոլսէն ստացուած տեղեկութեան մը համաձայն, Խորհրդ. Միութեան նախկին կրթական գործավար Լունաչարսկի, մէկ շաբաթէ ի վեր կը գտնուի Պոլիս, ուր կեղծ անունի տակ, կը կատարէ խորհրդային ներկայացուցչութեան կցորդի պաշտօնը։ Պոլսոյ մէջ, ընդհանրապէս այն կարծիքը կը տիրէ թէ Լունաչարսկի եւս աքսորուած է, նման Տրոցկիի, բայց նուազ խստութեամբ։*

### Չինաստանի մէջ ողողումներ

#### 250,000 ՀՈԳԻ ԽԵՂԴՈՒԱԾ

*Հանքէուի ոստիկանութեան կողմէ պատրաստուած վիճակագրութեան մը համաձայն, վերջին ողողումներու հետեւանքով, բոլորովին քանդուած են 163,000 բնակարաններ։ Հաստատուած է որ 250,000 անձեր խեղդուած են։*

*Անկից զատ, վերջին լուրի մը համաձայն Եանկ-Չէ գետին ամբարտակները խորտակուած ըլլալով, 50,000 հոգի եւս խեղդուած են ողողումներէն։*

### Անգործութիւնը Ամերիկայի մէջ

*Նիւ Եորքի մէջ կը մտածեն 20 միլիոն տոլարի հիմնադրամ մը հաստատել, օգնութեան հասնելու համար գործազուրկներուն, որոնց թիւը, ինչպէս գրեր էինք, ամբողջ Ամերիկայի մէջ կը նկատուի 7 միլիոն։ Առաջարկը ներկայացուցած է Նիւ Եորքի կառավարիչը որուն ուժ կուտան հանրապետականներն ու ռամկավարները։*











## Հ. Յ. Դ.

**ԳԱՒԱՌ**

Լիոնի Համազասպ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահին մէջ, կարեւոր օրակարգ, ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է, բացակաները նկատողութեան պիտի առնուին։

Սէն Լուի (Մարսէյլ) Պատ. Միութեան ընդհ. ժողովը այսօր երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Մ. Ը. Մ.ի Սկաուտական վերին մարմինս ողբացեալ Գ. ՊԵՏՐՈՍԵԱՆի մահուան առթիւ կուգայ իր խոր վշտակցութիւնը յայտնել հրապարակաւ իր մօր, տիկնոջ, զաւակներուն եւ ազգականներուն, ողբացեալին մէջ տեսնելով կորուստը սրտցաւ ու հայրենաբաղձ Հ. Մ. Ը. Մ.ականին։

### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

Տէսին, Կործ.— 360։
Անվէրս, Մահ.— 100։





### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

*Հ. Յ. Դ. Լիոնի ժողովրդային Գրադարանը, վարձքով կուտայ վիպական, ազգագրական, եւ ամէն տեսակ գիրքեր։ Ակումբը կը տրամադրուի նաեւ զանազան միութեանց ժողովներուն։ Դիմել Երկուշաբթի, Երեքշաբթի, Չորեքշաբթի, Հինգշաբթի եւ Ուրբաթ իրիկունները ժամը 7—8.30,* 206 Rue Duguesclin, Lyon.




















IMPRIMERIE - MASSIS - EDIT...
208bis, Rue Lafayette Paris

Le Gérant H. STEPH...

կղզի մը յատկացնել այս կարգի աքսորականներուն, ծովային Նախարարը այս նպատակին յարմար նկատած է Ղայտուրօնիսի ամայի կղզին:

Այս կղզին կը գտնուի Լավրիոնի դիմացը եւ նախապէս ծառայած է թուրք պատերազմական գերիներուն բնակութեան:

## Անգործութիւնը Ֆրանսայի մէջ

Օգոստոս 29ի վիճակագրութիւնը, նպաստընկալ անգործներու թիւը ցոյց կուտայ 37673 որոնց 8396ը կիներ։ Մէկ շաբաթ առաջ, անգործներու թիւն էր 36972։ Ուրեմն, մէկ շաբաթէն միւսը 701 յաւելում մը։

Այս շաբթուան ընթացքին, անսովոր քաղաքացիութեամբ օտար աշխատաւորներ մտած են Ֆրանսա, 7138, որոնց 6870ը հողագործութեան համար։ Ֆրանսայէն իրենց երկիրները մեկնած են 908 օտարականներ։

## 17 միլիոն լիտրա ալքօլ բռնուած

Նիւ Եորքի մէջ ոստիկանութեան կողմէ կատարուած խուզարկութեան մը հետեւանքով ոգելից ըմպելիի գաղտնի գործարանի մը մէջ բռնուեցաւ 17 միլիոն լիտրա ալքօլ։ Կարելի եղաւ միմիայն մէկ հոգի ձերբակալել։ Գործին մասնակցող ուրիշներ ու իրենց մեքենավարները յաջողեր էին փախչիլ, շնորհիւ նախապէս պատրաստուած փախուստի գաղտնի ճամբաներուն։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
308bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN




«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (47)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

### 72.— ՋՐՊԱՐՏԻՉՆԵՐ ԵՒ ՍՈՒՏ ՎԿԱՆԵՐ

— Տարիքս 90ը անց է: Երկու ոտքերս գերեզմանին մէջ են արդէն, ես կրնա՞մ սուտ խօսիլ այլեւս: Եթէ չէք հաւատար խօսքերուս, ծի՛ հաւատաք՝ սակայն Թոյլ տուէք, որ տունս դառնամ: Դիտողս այս է:

Եթէ կարեւորութիւն տայի իր տարիքին, իր դէմքին, իր խօսքերուն եւ միւս բոլոր վկաներուն, դժբախտ մարդ մը ծանր դատապարտութիւն մը պիտի կրէր: Իրականին մէջ, ոչ այս ծերունին հաւատք կ'ընծայէի, ոչ ալ միւսներուն վկայութեան: Ամբաստանեալը տկար ու միամիտ մարդ մըն էր: Գիշեր ցերեկ աշխատեցայ, եւ երեք օր չեռոյ յաջողեցայ հաստատել, որ կոպիտ զրպարտութիւն մըն է: Ամբաստանեալ վաճառական Րաուֆ էֆէնտիի գործի ընկերն էր որ այս խաղը լարեր էր: 5 ոսկի խոստացեր էր անոնց, որոնք գործիք դարձած էին: Վկաներէն Մուհսին աղա խոստովանեցաւ եւ Նատիրի Թէվֆի էֆէնտի խայտառակուեցաւ: Սուտ վկաները ձերբակալեցի: Յաջորդ օրը դատական իշխանութեան պիտի յանձնէի: Կայսեր սենեկապետներու դիւանին ալ հաղորդեցի խնդիրը:

Բայց այս քննութիւնը ճեզ առաջնորդեց աւելի կարեւոր խնդիրներու. Հասկցայ որ Պոլսոյ Շէրիի դատարաններուն մէջ «կը գործէին» աւելի քան 60 սուտ վկաներ: Այլեւս չեսնուած ձեւով անարդարութիւնը ի՛նչպէս կը գործադրուէր, կրնաք երեւակայել: Քանի՜ տուներ քանդուած էին այդ սուտ վկաներուն պատճառով: Անոնք յարաբերութեան մէջ էին նաեւ Պոլսոյ լրտեսներուն հետ, որոնց քսութիւններուն գործիք կը դառնային յաճախ:

Երբ ոստիկանութեան նախարար անուանուեցայ, բաւական կռուեցայ այս չարաշեղ կազմակերպութեանց դէմ: 4.5 ամսուան ընթացքին, ձերբակալեցի բոլոր սուտ վկաները: Բայց երբ դատարանի յանձնեցի, Շէրիի դատարաններուն պատիւը, փրկելու համար՝ անպարտ արձակուեցան:

Նատիրի Թէվֆի էֆէնտիի խնդրին քննութեան օրերուն էր: Իրիկուն մը Թէփէպաշիի Թատրոնը գացի: Իտալական Թատերախումբը «Դարմէն» կը խաղար: Ցանկարծ Թիկնապահս ներս մտաւ:

— Կայսեր առաջ քարտուղար Օսման պէյին գրագիրը ձեզ տեսնել կ'ուզէ:

Ըսի, որ օթեակս գայ: Բարակ ու սեւ պեխերով, փափկակազմ ու քաղաքավար երիտասարդ մըն էր: Օսման պէյի բարեւը հաղորդելէ յետոյ, ըսաւ.

— Նատիրի Թէվֆի էֆէնտիի վկաները ձերբակալեր էք, մինչդեռ բուն յանցաւորները ազատ կը Թողուք: Վեհափառը նեղացաւ եւ հրաման ըրաւ Օսման պէյի, որ հաղորդուի Թէ անմիջապէս պէտք է ազատ արձակել ձերբակալեալները:

— Անոնք բոլորն ալ սուտ վկաներ եւ զրպարտիչներ են: Վաղը դատի պիտի յանձնուին: Եթէ յանցաւոր չեն, դատարանը կրնայ ազատ արձակել զանոնք: Շէրիի դատարաններուն մէջ սուտ վկայութիւն տուած են, ուստի պէտք է ծանր դատապարտութիւն մը կրեն: Ի՞նչպէս կրնամ ես ազատ արձակել զանոնք: Ներսոյ ղժուար կ'ըլլայ արդարութիւնը երեւան հանել: Ըսէք իրեն այս բաները:

Ժամ մը յետոյ գրագիրը նորէն եկաւ մտաւ:

— Ճիշդ չէ, կ'ըսէ Օսման պէյ, ձերբակալել բոլոր անո՛նք, որ Վեհափառին անձին հանդէպ իրենց հաւատարմութիւնը յայտնելու համար վկայութեան կուգան, եթէ նոյնիսկ չհաստատուին այդ վկայութիւնները: Օրէնք դարձած է այլեւս այդ: Հակառակ պարագային, ոչ ոք այտուհետեւ կայսեր գերագոյն անձը պաշտպանելու համար վկայութեան կուգայ: Պէտք է որ ազատ արձակուին ձերբակալեալները: Եթէ պէտք է դանոնք ձերբակալել ուրիշ յանցանքի մը համար եւս, այն ատեն նախ ազատ կ'արձակենք այդ նոր ամբաստանութեամբ դարձեալ կը ձերբակալէք:

Անկարելի էր այլեւս դիմադրել եւ հրամանը չգործադրել: Ազատ արձակել տուի ձերբակալեալները: Սակայն քանի մը օր յետոյ, Շէրիի դատարաններուն մէջ սուտ վկայութիւն տուած ըլլալու ամբաստանութեամբ դնելով զանոնք, դարձեալ ձերբակալեցի:

Այս էր աճա Երկրին վիճակը, մանաւանդ Սուլթան Համիտի ... ջանին: Սուլթան սկսած էր այն օրէն, երբ ոստիկանական նախարար ... ուանուեցայ: Պահ մը ընդհատելով, եւ վերադառնալով հին օրերուն ... ներկայացնել երկրին կացութիւնը եւ կառավարական եղանակները ... ոստիկանական նախարար անուանուեմ, երբ սուր ձեւ մը առաւ ... հարցը:

Դյժմ մանրամասն կը ներկայացնեմ Հայոց կատարած ... 

ԹՈՒՐՔԻԱ

Էնկիւրիէն, 22 սեպտ.ի հեռագիր մը կը յայտնէ թէ Թուրքիոյ սակարանը լքած է ոսկերլինը իբր գործառնութեանց խարիսխ և ընդունած ֆրանքը։ Սակարանական գործառնութիւնները կանոնաւորաբար կատարուած են. թրքական ոսկին կը բռնէ 12,06 ֆրանք։

ԳԵՐՄԱՆԻԱ

Ինչպէս գրեր էինք, ամբողջ Գերմանիոյ սակարաննները փակուած էին մինչեւ չորեքշաբթի օր։ Բոյխսպանքի որոշումով ժամանաւոր զեղչի սակը բարձրացած է 7.88էն 8 առհարիւրի։

Պերլինի անգլիական գեսպանը, այցելեց գերման վարչապետին, որուն հաղորդեց Անգլիոյ կիրարկած միջոցները ելմըտական տագնապին առթիւ։

ՊԵԼՃԻՔԱ

Պրիւսէլի գլխաւոր դրամատուններու ներկայացուցիչները խորհրդակցութիւն մը ունեցան, եւ որոշեցին 1 միլիառ ֆրանքի գումար մը տրամադրել, օժանդակելու համար շուկային, եթէ պէտք ըլլայ։

ԱՆԳԼԻԱՅԷՆ ՎԵՐՋ ՃԱՓՈՆ

Ճափոնի մէջ, ոսկի-չափանիշով դրամական դրութիւնը վերցնելու կողմնակիցները կը շատնան։ Բազմաթիւ են անոնք որ կը պահանջեն հետեւիլ Անգլիոյ օրինակին։ Շատերը կը կարծեն թէ Անգլիոյ վերջին որոշումը պիտի նպաստէ վերցնելու անորոշ կացութիւնը՝ որուն մատնուած են Եւրոպայի ելմտական շրջանակները։

ԻՏԱԼԻԱ

Իտալիոյ Սակարանները փակուեցան բոլոր արժեթուղթերու վրայ բաւական ծանր անկումով։ Պետական արժեթուղթերն եւս զերծ չմնացին անկումէն։

Իտալական գեսպանը կը հերքէ այն զրոյցը թէ Իտալիա եւս կը պատրաստուի վերցնել ոսկի-չափանիշի դրութիւնը։

ԱՄԵՐԻԿԱ

Ամերիկայի սակարանական շրջանակները կը գովեն Անգլիոյ ձեռք առած միջոցները։ Նիւ Եորքի կարեւոր դրամատէրներուն կողմէ յայտնուած վստահութիւնը հանդէպ Անգլիոյ հանդարտեցուց մտքերը։

Ոսկերլինը անշուշտ, կարգ մը ելեւէջներ ունեցաւ։ Նախորդ օր, գործառնութեանց սկիզբը 4 տոլար կ'արժէր, բարձրացաւ 4,30ի կէս օրէն վերջ եւ փակուեցաւ 4,31ի։

## ԵՐԵԿՈՅԹ—ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**Ձ. Ռ. Մ.**

Ձ. Ռ. Մ.-ի Փարիզի եւ շրջականներու մասնաճիւղերուն կողմէ 17 Հոկտ. Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Ingenieurs Civilsի սրահներուն մէջ։

Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (50)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 4.— ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆԸ

«Թող սուրբ դառնան ձեր սիրտերը, լսելով անոնց աղաղակը։ Թող աշխարհ սարսի ձեր սուրերուն շաչիւնէն։ Թող քաղաքակիրթ աշխարհը գիտնայ թէ չենք վարանիր մեռնելու յանուն ազատութեան և յաղթանակի։ Կը պահանջենք Կիլիկիա եւ Զէյթուն։

Մեզի վայել չէ գերութիւնը, թշուառութիւնը, սովահար մեռնիլը, անորգուիլը, չարչարուիլը կամ կախաղան բարձրանալը։ Ձենք կրնար հանդուրժել այլ եւս այդ վիճակներուն։ Ուրեմն ամուր բռնենք ձեր սուրը։ Թող երկաթի պէս պնդանայ ձեր կամքը, եւ թող երկաթը կրակ դառնայ։ Կիլիկիա՛, բարձրացո՛ւր բիրը, գաւազանը, բահը, բրիչը, կացինը, դաշոյնը, հրացանը, ատրճանակը, ինչ որ գտնես։ Բարձրացո՛ւր եւ պատրաստուէ։ Հայանը, ... ինչ որ գտնես։ Թող հովը ըմբռնելով եղբայրներ զոհ գացին, կենդանացո՛ւր անոնց ոգին։ Եւ թող հովը ծփանք տայ ձեր յաղթանակի դրօշին, յեղափոխութեան ձայնը թող որոտման պէս գոռայ։

Նուիրական է քու դատդ եւ մեծ։ Յաղթանակը ապահով է։ Եթէ մեռնինք, նահատակ պիտի կոչուինք։ Սակայն ձեր յաղթանակէն պիտի ծագին բարօրութիւն եւ երջանկութիւն։ Թալե՛նք բարբարոսներուն վրայ։ Ամէն մէկս ընդհանուրին համար, եւ ընդհանուրը ամէն մէկուն համար։

Կեցցէ՛ հայ ժողովուրդը։
Կեցցէ՛ ազատութիւնը։
Կեցցէ՛ յեղափոխութիւնը։
Կեցցէ՛ սղասամբութիւնը։
Կեցցէ՛ Հայաստան եւ Կիլիկիա։
Կեցցէ՛ Հնչակեան կուսակցութիւնը։

Հնչակեան Սոց. կուսակցութիւն

Զէյթունի Հնչակեան կոմիտէն եւս ցրուած էր հետեւեալ յայտարարութիւնը.—

Ահա՛յ ժողովուրդ,
Վաղեցէք ձայնին,

Որ հրաւէր մըն է փրկելու հայ ամբողջ ժողովուրդը այս անվերջանալի գերութենէն։ Դուք կը ճանչնաք արդէն այդ ձայնը։ Գերութեան շղթան խորտակելու համար, Զէյթուն պատերազմ սկսաւ։ Եւ ահա ձեզի կը կանչէ։ Վազեցէք օգնութեան։

Եղբայրնե՛ր

Վայրագ թշնամին տարիներէ ի վեր կրակ կը թափէ Հայոց գլխուն։ Այսօր այդ կրակը կ'ուզենք թափել իրենց գլխուն։ Կը պահանջենք քաղաքական ազատութիւն, անկախութիւն, ինքնավարութիւն, եւ հաւասարութիւն։ Ահա կը պարզենք սիրելի դրօշը, Կիլիկիոյ, Զէյթունի եւ Հնչակեան կուսակցութեան կարմիր դրօշները։

Կիլիկիոյ հայ ժողովուրդ,

Յանուն Կիլիկիոյ եւ Հայաստանի ազատութեան ու անկախութեան, Զէյթունի Հայերը, դաշնակցելով Հնչակեան կուսակցութեան հետ, այսօր միաձայնաբար կ'ելլեն ասպարէզը կը նետուին։ Կոչ կ'ուղղենք ձեզի այն լեռներէն, որոնք ներկուած են ձեր արիւնով, եւ կը հրաւիրենք օգնութեան հասնիլ Զէյթունցիներուն։ Յանուն տասնեակ հազար ձեր նահատակ եղբայրներուն վրէժին, կը սպասենք ձեր օգնութեան։ Մի՛ վախնաք, սուրը ծ գործէք։ Ձեռք ձեռքի տանք եւ յառաջ ընթանանք, կռուի՛նք մինչեւ ձեր արեան վերջին կաթիլը։ Կա՛մ կը տեսնենք Հայաստանի ազատութիւնը, կամ կը մեռնինք այդ նուիրական հողին վրայ։ Օգնութեան հասէք։

Կեցցէ՛ Հայաստան։
Կեցցէ՛ ազատութիւնը։
Կեցցե՛ն Կիլիկիան եւ Զէյթունը։
Յառա՛ջ։
Դէպի Կիլիկիա եւ Զէյթուն»։

### 5.— ՅԵՂԱՓՈԽՈՒԹԻՒՆԸ ՍԿՍԱՒ

«Սիւլիւկճի» Միրայր, Միրանուշին Նշանածը, որ բացումը կըրեց Կիլիկիոյ յեղափոխութեան, ծանօթ էր նաեւ «տօքթէօր» անունով։ Հոկտեմբերի 11ին, Զօդմարդուանի Օճաղը կոչուածը կողմը, յանուն Հայաստանի կը բանայ դրօշակը, գլխուն կը դնէ գլխարկ մը սկսի ճառել։

— Է՛յ հայ եղբայրներ, ազատելու համար մեզ գերութենէն, կան նաւատորմը կը հասնի շուտով։ Ի՞նչ կը սպասէք։ Ոտքի ելէք. Ապստամբինք, յեղափոխութիւն յայտարարենք։ Ազատինք բարբարոսութենէն։

Այսպէս կ'աշխատի գրգռել ժողովուրդը։

Կառավարութիւնը գուշակելով որ հայկական յեղափոխութիւնը մասնաւոր կարեւորութեամբ պիտի փորձուի Կիլիկիոյ շրջանին մէջ, նարկեր էր ոստիկանական կազմակերպութիւնը զօրացնելու եւ մինչեւ հեռաւոր գիւղերը։ Տեղական ոստիկանութիւնը, զգուշական մեծ միջոցները ձեռք առնելով հանդերձ, լուր տուաւ նահանգային ոստիկանութեան։ Անդորրութիւնը պահպանելու համար, երկու ջոկատ ուղարկուեցաւ եւ Ատանայի կուսակալն ալ քննութեան ելաւ

Le Gérant H STEPHAN



«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (53)

# ՆԱԶԸՄ ՓԱՇԱՅԻ ՅՈՒՇԵՐԸ

## ՀԱՅՈՑ ԴԱՀԻՃԸ ԿԸ ՊԱՏՄԷ...

ԵՐԿՐՈՐԴ ՄԱՍ

### 6.— ԿՌԻՒ ԵՒ ՋԱՐԴ

Այս աւազակները զինուած արդիական զէնքերով, հագած էին զինուորական զգեստներ եւ բոլորն ալ ձի հեծած էին։

Մարաշի Զէյթուն թաղին մէջ քանի մը յեղափոխականներ կը հաւաքուին եւ կարծես թէ կառավարութիւն գոյութիւն չունենար, յեղափոխութեան ծրագրի մասին վիճաբանութիւն կը կատարեն։ Անոնց նպատակն էր արմատական եւ ահաւոր յեղափոխութիւն մը պայթեցնել երկրին մէջ։ Պիտի յարձակէին կառավարութեան եւ իսլամ թաղերուն վրայ, անխնայ կոտորելով բոլորը։ Ծրագրելու եւ գրուելու համար զանոնք, երկու հետեւակ զումարտակ զինուոր ղրկուեցաւ։ Բայց չթողլով մօտենալ իրենց, առանց անոնց յորդորը լսելու, յեղափոխականները կրակ կը բանան։ Զինուորները փոխադարձութեան կը դիմեն, ինքնապաշտպանութեան համար։ Եւ կը սկսի ճակատամարտ մը, որ կը տեւէ չորս ժամ։ Յեղափոխականները գնդակ կ'արձակէին ոչ միայն զինուորներուն վրայ, այլ եւ Թուրքերուն բնակարաններուն ու փողոցէն անցնող իսլամներուն վրայ։ Այս ձեւով զինուորները եւ անկանոն մարտիկները, ինչպէս նաեւ անզէն բնակիչները բազմաթիւ մեռեալ կամ վիրաւոր ձգեցին։ Յեղափոխականներուն զոհն ալ երկու հարիւրէն աւելի էր։

Ի վերջոյ սահպուելով ցրուիլ, յեղափոխականները յարձակեցան Թուրքաբնակ գիւղին վրայ, հրդեհելով աւելի քան 40 տուն։ Ցետոյ էնտէրուն գաւառին Սինափէշ Նուրլու գիւղն երթալով — հայաբնակ գիւղ մըն է այս — կատարեալ խրամներ փորեցին։ Իրենց նպատակն էր խռովութիւն յարուցանել, ուստի ճամբորդ անմեղ Թուրքերը յարձակումի կ'ենթարկուէին, երբ այդ շրջանէն կ'անցնէին։ Թուրքերը այստեղ ալ բազմաթիւ վիրաւորներ ու մեռեալներ ձգեցին։ Այստեղէն յարձակեցան նաեւ շրջակայ գիւղերուն վրայ, աւար առնելով իսլամներուն ստացուածքը, այրելով անոնց բնակարանները, սպաննելով Թուրքերը։ Բաւին իրական իմաստով Կիլիկիոյ այս շրջանը արեան եւ կրակի մատնեցին։

### 7.— ՄԱՐԱՇԸ ԳՐԱՒԵԼ ԾՐԱԳՐԱԾ ԷԻՆ

Կոմիտէն ծրագրած էր գրաւել Մարաշը, միացնելով այն ուժերը, որոնք պիտի իջնէին Զէյթունէն։ Օգտուելով հանդերձ այդ ուժերուն, կ'ուզէր աշաբեկումի և սարսափի մատնել շրջանը՝ հրասակային կռիւներով, գիւղերը աւարի տալով եւ Թուրքերը սպաննելով։ Գիշեր մը, 15 սպառազէն Հայեր կրակ կ'ընեն եւ գետին կը փռեն թուրք երիտասարդ մը, որ Նամազի կ'երթար։ Անմիջապէս վրայ կը հասնի ջոկատ մը պահակազօրք։

Հայերը կրակ կը տեղան նաեւ զինուորներուն վրայ, որոնք կը ստիպուին փոխադարձութեան դիմել։ Հայերը չսպասելով ձգեցին ու փախան։ Մեռեալներու գրպանին մէջ գտնուեցաւ վաւերաթուղթ մը, որուն ընթերցումէն հասկցաւ որ Հայերը ծրագրած են ուրբաթ օրը, Նամազի պահուն, յարձակիլ իսլամներուն վրայ։

Մարաշի ժողովուրդը գրեթէ ամբողջութեամբ օգոստոս, սեպտեմբեր եւ հոկտեմբեր ամիսները կ'անցընէր այգիներուն մէջ։ Բայց մինչեւ հոկտեմբերի վերջը կային շատեր, որ այգիներուն մէջ կը բնակէին։ Այդ եղանակին այգեկութքը կը վերջանայ եւ ռուպ (սփէցմէզ») ու պաստա (պալուզմա) կը շինեն։ Ճամբաղէն յետոյ ժողովուրդը քաղաք կը վերադառնայ։

Այն տարին, երբ այս դէպքերն սկսան, ժողովուրդը հոկտեմբերի սկիզբը կէս ձգեց այգիներու աշխատանքը, այգին թողուց խաղողն ու աշնան ...ները եւ երկու օրուան ընթացքին հաւաքուեցաւ Մարաշ վերադարձաւ։ ...պարագան ուշադրութեան արժանի էր։ Ի՞նչ էր պատահեր, ի՞նչ կը դառնար։ Ի՞նչ արտակարգ պատճառ կար, որ ժողովուրդը խուճապի մատնուեր, այգին անտէր ձգելով բոլորը միասին քաղաք կը վերադառնային։ Նոյն եղանակին, Անատոլուի ամէն կողմը կը տարածուէին որսորդները։ Կ'որսան կաքաւ, ճագար, այծեամ եւ ուրիշ ուտելի կենդանիներ, նաեւ վնասակար կենդանիներ, խոզ ու աղուէս։ Հայերն էին մասնաւորապէս որ կը զբաղէին վառօդ, կապար, փամփուշտ եւ որսորդական ... ծախելով։ Այդ տարին թուրք որսորդները մէկ կրամ վառօդ չկրցան առնել հայ մանրավաճառներէն։ Կոմիտէն բոլոր այդ պայթուցիկ ...առած ու բաշխած էր Հայերուն, ինչպէս տեղեկացանք ետքէն։

Հոկտեմբերի 13ին ուրբաթ առաւօտ, Մարաշցի Հաֆըզ ֆամեր ... ծամածառ Արթինին խանութը կ'երթայ միս գնելու։

— Միսը լաւ տեղէն չկտրեցիր։

— Ո՛չ, լաւը կտրեցի։

Պակաս կշռեցիր

— Ո՛չ, ճիշդ կշռեցի։

